1916 № 52.—Դեկտեմբերի 25 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռ., կէս տարուան 2 ռ.։ Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ Թիֆլիս, Արասաբադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**՝ տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական Ժողովի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։

Թերթը բաղկացած կլինի 8 (երբեմն 12—16) մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։

Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ., հայ դպրոցների, ուսուցիչների, հայ հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռուբլի, կէս տարուան 2 ռուբլի։ Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։

Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասաբադեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։

Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԳԱՒԱՌԻ ԿԱՐԻՔՆԵՐԸ

Ամէն տեղ, ամէն օր մամուլի մէջ, ժողովներում, մասնաւոր խօսակցութիւնների ժամանակ յաճախ լսում էք գաւառի աղաղակող կարիքների անհաղանգը և անթիւ ցաւերի ճիչը։

«Գաւառը մնացել է խաւարի, տգիտութեան մատնուած, գաւառը տնտեսական տագնապի մէջ է. գաւառը հարստահարւում, կեղեքւում է»—այդ պնդում են բոլորը, այդ մասին ճառում են շատերը։

Սակայն ապարդիւն. գաւառի ցաւալի դրութիւնը շարունակւում է, ժողովուրդը տանջւում է և կրկին մընում է զուրկ փոքր ինչ վայելուչ մարդկային կենցաղից։

Եթէ, օրինակ, մի ամբողջ Շուշուայ թեմում, ուր կայ 225 հայ գիւղ, հայ ժողովուրդը ունի ընդամենը 45 ազգային դպրոց, մեծ մասամբ միդասեան, որոնք հազիւ հազ պահպանում են իրենց գոյութիւնը. եթէ մի խիտ հայաբնակ Ախալքալաքի գաւառն ունի մի քանի հատ համանման խղճուկ դպրոց—մինթէ սրանից էլ աւելի պերճախօս փաստեր են հարկաւոր համոզելու, որ գաւառի հայ ժողովուրդը զուրկ է մնացել լուսաւորութեան ճառագայթներից և խարխափում է խաւարի մէջ։

Զմոռանանք, որ մենք ապրում ենք XX լուսաւոր անուանեալ դարում, չմոռանանք, որ Շուշուայ թեմն ու Ախալքալաքի գաւառը եզական չեն. միևնոյն վիճակում են բոլոր մեր հայաբնակ վայրերը, համարեա առանց բացառութեան։

Եթէ մեր գիւղացին՝ պատմական ծանր հանգամանքների ճնշման տակ, թողած պտղաբեր դաշտերը, իր գոյութիւնը պահպանելու համար ստիպուած է եղել դարերի ընթացքում պատսպարուել ու ապրել լեռնաշղթաներում և բարձրավանդակներում, ուր հեղեղները հողային շերտերը սրբել, տարել են, և խեղճ հայ գիւղացին հարկադրուած մշակում է մեծ մասամբ քար ու աւազախառը և ուժասպառ գետինը, այն էլ նահապետական ձևով, չը պէտք է զարմանալ, որ նա, բացի աղէտ լինելուց, և աղքատ է, երբեմն ծայրայեղ աստիճանի։

Անողորմ բնութեան այդ խորթ որդին՝ հայ գիւղացին, որպէս զի կարող լինի իրեն և ընտանիքի անունը հայթայթել, տարուայ մեծ մասը պանդխտում է և դուրսը մշակի գառն աշխատանքներով է անցկացնում իւր ժամանակը, գլխաւորապէս մեծ քաղաքներում, ենթարկուելով երբեմն բարոյական և ֆիզիքական քայքայման, որի հետևանքները աւելի ծանր են լինում ապագայ սերունդների համար։

Քաղաքներում ապրող մտաւորականների և հարուստների—թէ տեղացի և թէ մանաւանդ գաւառացի—և մեր ազգային հաստատութիւնների վրայ մեծ և ծանր պարտականութիւն կայ գործադրելու իրենց բարոյական և նիւթական ոյժերի մեծ մասը գաւառներում, որպէս զի գաւառը ևս լուսաւորուի, ուժեղանայ և բարձրանայ տընտեսապէս։

Այս տեսակ գործունէութիւնը պահանջում է լաւ մտածուած և մշակուած ծրագիր, պահանջում է և անխախտ ներդաշնակութիւն գործողների մէջ՝ լինին անհատներ թէ կազմակերպութիւններ—այդ միևնոյն է։

Լուսաւորութիւն տարածելու համար հարկաւոր է գիւղերը ծածկել դպրոցների, գրադարան-ընթերցարանների ցանցով, իսկ ժողովրդի տնտեսական դրութիւնը բարուոքելու համար պէտք է տարածել գիւղական ժողովրդի մէջ գիւղատնտեսական գիտելիքներ հողագործութեան, անասնապահութեան, մեղուաբուծութեան, բանջարաբուծութեան մասին. հարկաւոր է գիւղատնտեսական ինքնուրոյն դպրոցներ հիմնել կամ գիւղատնտեսական բաժանմունքներ բանալ գիւղական երկդասեան դպրոցներին կից, հարկաւոր են մասնագէտ շրջիկներ ցուցմունքներ տալու համար. վերջապէս, անհրաժեշտ է տարածել գիւղերում պարզ, ժողովրդական լեզուով գրքոյկներ։

Ոչ պակաս կարևոր է գիւղերում տարածել և արհեստներ՝ պատրաստելու իրեր թէ իրենց սեփական կարիքների և թէ արտահանելու համար։ Այդ նպատակի համար հարկաւոր է հիմնել արհեստանոցներ և հրաւիրել շրջիկ վարպետներ։

Ռուսաստանում կան գաւառներ, որտեղ գիւղական ժողովրդի ապրուստի գլխաւոր աղբիւրը արհեստն է իրեն տեղումն։ Այդ գիւղերում պատրաստուած իրերը, որ վաճառւում են մեծ քաղաքներում, չեն տարբերւում գործարաններում պատրաստուածներից։ Այդ տեսակ արհեստաւորների թիւը հաշւում է տասը միլիոնից աւելի։

Գիւղական տնտեսութեան զարգացմանը աւելի ուժեղ զարգ տալու համար պէտք է ստեղծել այնպիսի պայմաններ, որ գիւղացին հնար ունենայ հեշտ դրամական փոխառնութիւն ունենալու, որպէսզի ազատ լինի վաշխառուների հարստահարումից։

Այս նպատակին հասնելու համար անչափ կարևոր է տարածել գիւղերում մանր վարկային ընկերութիւններ, փոխատու-խնայողական դրամարկղներ, սպառողական խանութներ, գիւղատնտեսական գործիքների պահեստներ։

Այս օգտակար հիմնարկութիւնների թիւը դժբաղդաբար շատ սակաւ է մեր գիւղերում, եթէ համեմատենք մեր հարևան վրացիների հետ։

Եթէ ի նկատի առնենք, որ յիշեալ հարցերի մեծամասնութեան մասին կան մշակուած կանոնադրութիւններ, գրաւոր ցուցմունքներ և գրականութիւն, այն ժամանակ հարց է ծագում. թէ ինչու մեր հայ գիւղերում այդ տեսակ գործունէութիւնը բացակայում է կամ նուազ է հանդէս գալիս։

Գլխաւոր պատճառը այդ ցաւալի երևոյթի մեր նախաձեռնութեան պակասութիւնն է,

Ամէն մի ստեղծագործական աշխատանքի. առաջադիմութեան նշանաւոր գործօնը նախաձեռնութիւնն է, առանց որի գործը մեռնում է. նախաձեռնութիւնն է գործի ոգին՝ animus։

Նախաձեռնութիւնը լինում է թէ անհատների և թէ հասարակական կազմակերպութիւնների կողմից։ Մեր

հայերի մէջ կան և բանիմաց անհատներ և բաւական հասարակական կազմակերպութիւններ։

Ժամանակ է զգալ և գիտակցել մեր ժողովուրդի մեծամասնութեան յետամնացութիւնը. ժամանակ է եռուն կեանք մտցնել մեր գաւառները, որպէս զի գիւղն էլ ազատուի իր դառը վիճակից։

Ս. Յ.

## ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐԻՆ ՉՄՈՌՆԱՆՔ

Պատերազմի այս ահաւոր չարիքից շատ մարդ տուժեց, շատ ընտանիքներ մնացին անտէր-անտիրական, որի վրայ աւելացան ապրուստի թանգութեան սարսափելի հարուածները։

Մի կողմից մեր սիրելի հայրենիքը քարուքանդ եղաւ, տուներն ու շէն քաղաքները կործանուեցան և մեր հարազատ տաճկահայ եղբայրները բնաւեր, թափառական թռչունների պէս եկան մեր աշխարհը, հազիւ կարողանալով ճողոպրել անագորոյն թշնամու գազանութիւնից։

Միւս կողմից Կովկասը պատերազմի պատճառաւ տնտեսական ահագին զրկանքների ենթարկուեց, աղքատների և կարօտեալների թիւը բազմացաւ, և այսօր նրանք մերկ ու անպաշտպան սպասում են օգնութեան. իսկ նրանց քաջարի և պարտաճանաչ զաւակները պատերազմի դաշտում կուրծքը դէմ են դնում թշնամու յարձակումներին։

Բոլոր այս կարօտեալները, այս ցուրտ ու սառնամանիք օրերին, մեզ են նայում վզերնին կախած և սպասում են, որ մենք կատարենք մեր մարդկային եղբայրական պարտականութիւնը, ինչպէս նրանք կատարեցին, իրենց որդիների և հարազատների արեան գնով պաշտպանելով մեր հայրենիքը, պաշտպանելով մեզ...։

Պարտականութեան այս տարրական զգացումով համակուած բանանք մեր քսակները, մեր գորովագին օգնութեամբ տաքացնենք դարդից տառապող մեր որբերին և նիւթական կարիքների մէջ հեծեծող եղբայրներին։

Նոր տարին մօտեցել է և մի նոր պատեհութիւն է ընծայում մեզ, որ ցոյց տանք մեր պարտաճանաչութիւնը հանդէպ մեր կարօտեալ եղբայրներին, կազմակերպելով բոլոր քաղաքներում նուիրատուութեան և ժողովարարութեան յատուկ օրեր։ Յիշենք մանաւանդ մեր անհայր-անմայր որբերին և թեթևացնենք նրանց անօրինակ տառապանքը գալիք տօնական «ազիզ» օրերին և սփոփենք նրանց վշտահար սրտերը կազմակերպելով հանդէսներ և տօնախմբութիւններ։

Չմոռանանք կարօտեալներին։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց Արևմտեան ճակատ.—Շաբաթուայ ընթացքում այս ճակատի վրայ կարևոր փոփոխութիւններ տեղի չունեցան։ Զոլոչևի ուղղութեան վրայ հակառակորդի յարձակումը յետ է վանուել։ Մոլդաւիայի շրջանում, Կասուդրա գիւղից մինչև Սուլչա գետահովիտը հակառակորդի յարձակումը յետ է վանուել։

Ռումանական ճակատ.—Ամենից կատաղի և եռուն կռիւներ այս ճակատի վրայ տեղի ունեցան։ Թշնամու կատաղի յարձակումների հակառակ ռումինները տեղ-տեղ յարձակողականի անցան։ Կասինա գետից հիւսիս ռումինները ուժեղ հակայարձակման դիմեցին։ Ֆոկշանի շրջանում հակառակորդի գրոհը յետ է շպրտուել։ Ռուսական մի գունդ գրաւել է Գոզեանկա գիւղը Ռիմնիկի գետաբերանից հարաւ-արևմուտք՝ առնելով գերիներ, 5 թնդանօթ և 8 գնդացիր։ Դոբրուջայում Մաչինի շրջանում հակառակորդի գրոհները յետ են մղուել։

Կովկասեան ճակատ.—Կալկիտից արևմուտք ռուսները ճեղքել են թիւրքերի պահակախումբը և գերիներ են առել։ Փոփոխութիւններ չկան։

# Ներքին տեսութիւն

## ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԵՐԵԿՈՅԹՆԵՐԻ ՄԱՍԻՆ

«Համբաւաբերի» № 51-ում լոյս տեսած պ. Վ. Խորէնու «Գիտական հանդուրժողութիւն» յօդուածում մի շատ կարևոր հարցի մասին է խօսւում։

Հանդուրժող չէ մեր մտածողութիւնը, այլ աղաղակող, դոկմատիկ և անվերապահ։ Վերջին խօսք յայտարարելը մեր մտածողութեան հիմնական թելադրիչն է. մի փոքր կասկած, մի փոքր որոնման հետք չի երևում մեր մտածման արդիւնքները հրապարակով յայտարարելու ժամանակ։

Պ. Խորէնին մասը դրել է ճիշտ վէրքի վրայ։ Առ այժմ նա մասնակի դէպքերի նկարագրի վրայ կանգ չի առել, հաւանօրէն այն ճիշտ համոզման պատճառով, թէ փաստերն այնքան շատ են առօրեայ և ամենքին յայտնի։

Ընդունելով հանդերձ, որ այդ մտածողութիւնը ճիշտ և իրականութեան համապատասխանող է, բայց և այնպէս կուզէի մի քանի խօսք ասել մի մասնակի իրողութեան մասին, որն առանձնապէս հասարակական մեծ նշանակութիւն ունի։ Խօսքս վերաբերում է Հայ Գրողների Ընկերութեանը։ Պ. Խորէնին էլ կարծես առանց անունը տալու, մասամբ այդ նոյն բանն ի նկատի ունի։

Այս տարի յաճախ ներկայ եմ եղել Հայ Գրողների Ընկերութեան երեկոյթներին։ Այդ երեկոյթների ընթացքում եղել են յաջող, ինչպէս և բաւական անյաջող դասախօսութիւններ։ Եղել են նաև վիճաբանութիւններ, որոնք ընդհանրապէս անյաջող են անցել, որովհետև այդ վիճաբանութիւնների ընթացքում ոչ թէ կարմիր թելի պէս անցել է ճշմարտութիւնը որոնելու ցանկութիւնը, այլ գրական շոշոգանքը ցուցամոլութիւնը, անհանդուրժող մտածողութեան որոտալի արտայայտութիւնը, դիմացինի վրայ ստուեր ձգելու ցանկութիւնը, անպատճառ մի բան ասած լինելու հիւանդութիւնը, իսկ գիտական որոնող ոգին շատ համեստ տեղ է ունեցել այդ վիճաբանութիւնների ժամանակ։

Այս բանի համար շատ չնչին չափով է մեղաւոր Գրողների Ընկերութիւնը, ամբողջ պատասխանատւութիւնն ընկնում է վիճողների վրայ։ Բայց հարցն այն չէ, թէ ով է մեղաւորը, այլ այն, որ այդ երևոյթին հանդիսատես է մեր զարգացող նոր սերունդը, որը հաւանօրէն այդ դասախօսութիւնների ընթացքում մտածողութեան արտաքին կողմի վրայ աւելի է ուշադրութիւն դարձնում, քան ներքին։ Եւ այդ էլ ոչ թէ այն պատճառաւ, որ երիտասարդը, պատանին ուշք չի դարձնում ասածների ներքին կողմի և արժանիքի վրայ, այլ որովհետև ներկայ դէպքում խօսք արտասանողներն իրենց ասածների արտաքին կողմին աւելի են ուշադիր, քան ներքին։

Ահա մի հանգամանք, որ չպիտի մոռանան ճառախօսները։ Նոր սերունդ և առհասարակ միտք կրթելու եղանակն այդ չէ։

Մի քանի խօսք էլ Հայ Գրողների երեկոյթները կազմակեր-

պողների մասին։ Առնենք իրականութիւնն այնպէս, ինչպէս նա կայ. երեկոյթներին թամաշան մեծ տեղ ունի. աչք և ականջ խտտացնող տպաւորութիւններ շատ կան. այս հանգամանքը բաւական վնասում է գործի լրջութեանը։ Ամէն կերպ պէտք է զգուշանանք այդ բոլորից, որպէս զի մտքի աշխատանքը զարգանալու աւելի լաւ հող ունենայ այդ երեկոյթների ժամանակ։

Եթէ այդ դասախօսութիւններին անկարելի է աւելի քան հրապարակային բնաւորութիւն չը տալը, որը իմ կարծիքով ցանկալի էլ չէ, բայց կարելի է գոնէ երկու շաբաթը մի անգամ կազմակերպել այնպիսի դասախօսութիւններ վիճաբանութիւններով, որոնք բաւարարութիւն կարող էին տալ փոքր ի շատէ մասնագիտական հետաքրքրութիւն ունեցող անհատներին։ Այդ դէպքում, մի փոքրիկ դահլիճի կամ մի պարզ սենեակի մէջ ժողոված կը լինէին այն մարդիկ, որոնց յոգնեցրել է աւելի քան հրապարակային աուլխսը։

Հայ Գրողների Ընկերութիւնը հանդէս է եկել նախ և առաջ այդ փոքրամասնութեան հոգևոր կարիքներին բաւարարութիւն տալու համար, իսկ իրականութեան մէջ իսկապէս մոռացել է իր կոչումը կազմող փոքրամասնութեանը և «գնում է» մեծամասնութեան ետևից։

Եթէ մեր կեանքն այնպէս է կազմակերպուած, որ մի ընկերութիւն պէտք է այդ երկու կարիքին էլ գոհացում տայ միաժամանակ, այն դէպքում եթէ մոռանալու հարց լինի, նախ և առաջ պէտք է մոռանալ մեծամասնութիւնը և ոչ ընդհակառակն։

Անվիճելի է, որ այս մի հասունացած կարիք է, որի մասին լրջօրէն պէտք է մտածի Հայ Գրողների Ընկ. Վարչութիւնը։

Իսկ նա կը մտածի այն ժամանակ, երբ նրա վրայ պարտականութիւն դնի ընդհանուր ժողովը, որը չի հրաւիրւում մի քանի տարիներից իվեր։ Այս հանգամանքը խախտում է վարչութեան գոյութեան հիմքը։ Շուտափոյթ պէտք է հրաւիրել այդ ժողովը, որպէս զի Ընկերութեան ապագայ գործունէութեան ծրագիրը մշակուի այժմեանից։

Գ. Էգիլեան

---

# ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

## † ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ

Ամսիս 18-ին Նոր-Նախիջևանում կնքեց իւր մահկանացուն Փ. Վարդանեանը, մեր 80-ական թուականի հայ անուանի գործիչներից մէկը։

Նա յայտնի է իբրև ուսուցիչ, թարգմանիչ և հասարակական գործիչ։ Հանգուցեալը չնայելով որ չերքեզահայ էր, բայց կարողացել էր լաւ իւրացնել հայերէնը։ Իբրև հանգուցեալ հայ մեկենաս Սանասարեանի սան ուսանելով Դորպատի համալսարանում իւր ուսումը շարունակեց կատարելագործել արտասահմանում—Գերմանիայում։ Ապա իբրև մի տեսակ մենտոր հանդիսացաւ Զուիցերիայում Սանասարեանի այն որդեգրների համար, որոնք յետոյ Կարնոյ Սանասարեան վարժարանի առաջին ուսուցիչներն ու վարիչները հանդիսացան։

1881 թուականի դպրոցական տարին նա հրաւիրուեց երջանկայիշատակ Գէորգ Դ-ի պատուէրով իւր ձեռնասուն Ս. Էջմիածնի ճեմարանի ընդհանուր պատմութեան, գրականութեան և գերմաներէնի ուսուցիչ, որ երկար տարիներ յաջողութեամբ և ոգևորութեամբ վարեց իւր պաշտօնը։

Մի փառաւոր շրջան եղաւ հանգուցեալի և իւր պաշտօնակիցների՝ Կ. Կոստանեանի, հանգուցեալ Ս. Մանդինեանի, Ս. Պալասանեանի և Ա. Նահապետեանի (վերջը եպիսկոպոս) ուսուցչութեան ժամանակը ճեմարանի համար, որ միշտ անմոռանալի կը մնայ այդ հաստատութեան սաների համար։ Հանգուցեալ հայկաբան Գ. եպիսկոպոս Այվազեանից յետոյ ճեմարանի այդ շրջանը Ա. Նահապետեանի տեսչութեամբ մի վերազարթման և ոգևորութեան շրջան կարելի է կոչել, որի նմանն այնուհետև շատ չտեսաւ այդ դժբախտ մեր միակ բարձրագոյն դպրոցը։

Այդ միջոցին, ինչպէս իւր պաշտօնակիցներն, այնպէս էլ Փ. Վարդանեանն աշխատակցում էր «Արարատ» ամսագրին գլխաւորապէս պատմական յօդուածներով։ Ապա Թիֆլիս փոխադրուելով զարդարում էր «Արձագանգ» օրաթերթը իւր ինքնուրոյն և թարգմանական գրուածքներով։ Այստեղ նա շնորհիւ եւրոպական լեզուների հմտութեան շարունակեց գլխաւորապէս թարգմանչական յաջող գործունէութիւնը—որ յայտնի է հայ ընթերցող հասարակութեան—և լինելով երկար տարիներ Հայոց Հրատարակչական Ընկերութեան Նախագահ, միաժամանակ վարում էր Յովնանեան դպրոցի տեսչութիւնը։

Փ. Վարդանեանը լինելով գաղափարակից «Արձագանքի» շուրջը խմբուած հայ ազգային գործիչների և որոշ ուղղութեան, միաժամանակ յարգանք էր վայելում իւր հակառակորդներից շնորհիւ իւր շիտակ, քաղցրահամբոյր բնաւորութեան և գաղափարականութեան։

Թիֆլիսից նա մեկնեց արտասահման իբրև դաստիարակ Ա. Մանթաշեանի որդոց, որից յետոյ նա քաշուեց Ն. Նախիջևան, ուր և մեռաւ։ Այս լուրը անշուշտ վշտահար կանի նորա բազմաթիւ յարգողներին և մանաւանդ աշակերտներին, որոնց համար նա ոչ միայն ուսուցիչ՝ այլև «եղբայր պատուական» էր։

Հանգիստ անխոնջ վաստակաւոր ուսուցչի, թարգմանչի և գաղափարական գործչի ոսկրներին։ Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի։

Սկայ

---

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ XI-րդ ԵՐԵԿՈՅԹԸ

Դեկտեմբերի 16-ին Երաժշտական Ընկերութեան դահլիճում կայացաւ Հայ Գրողների Ընկերութեան երեկոյթը. դասախօսեց վրացի լրագրող և հասարակական գործիչ՝ իշխ. Ի. Պ. Նակաշիձէն վրաց գրականութեան մասին։ Ներկայ էին վրաց գրողներ և հասարակական գործիչներ։

Նախքան դասախօսութիւնը Գրողների Ընկերութեան Նախագահ Յովհ. Թումանեան հետևեալ խօսքերն ուղղեց դասախօսին.

«Թանկագին Իլիա Պետրովիչ.

«Թոյլ տուէք ողջունել ձեզ Հայ Գրողների Ընկերութեան անունից, ի դէմս ձեր՝ ողջունել վրաց գրականութիւնը և Ընկերութեան կողմից նուիրաբերել այս գիրքը «Поэзія Арменіи»։ Այս գրքում ամփոփուած են մեր ժողովրդի հոգին և մեր ամենաթանգ զգացմունքները»։

Իշխ. Նակաշիձէն մի քանի խօսքով պատասխանելով մեր բանաստեղծին, սկսեց իւր դասախօսութիւնը, բաժանելով այն երեք մասի։

Առաջին մասում յարգելի դասախօսը մի ընդհանուր ակնարկ գցեց ժողովուրդների եղբայրութեան վրայ, որը հաստատուն կարող է լինել գրականութեան միջոցով։

Հետևեալ բաժիններում խօսեց ընդհանրապէս վրաց գրականութեան և մասնաւորապէս ժողովրդական գրականութեան մասին, ռուսաց տիրապետութեան շրջանում, որի լաւագոյն և

*տաղանդաւոր ներկայացուցիչներն են՝ Իլիա Ճաւճաւաձէ, Նինօշվիլի, Բարաթաշվիլի, Ակակի Ծերեթելի և ուրիշներ։*

*Առաջին անգամն էր, որ հայ բանիմաց հասարակութեան առջև պատկերանում էր վրաց գրականութիւնն իր կենդանի և փարթամ հասակով։ Զրնայած, որ այսքան երկար տարիներ հայ և վրացի ժողովուրդները ապրել են կողք կողքի, բայց անտեղեակ են մնացել մեծ մասամբ միմեանց գրականութիւնից։*

*Պէտք է կազմակերպել շարունակ այդպիսի երեկոներ թափանցելու համար հարևան ժողովուրդների ստեղծագործութեանց, որ մեծ հանգրուան կարող է ծառայել երկու ժողովուրդների եղբայրութեան, որոնք չըգիտես ինչ կոյր, ճակատագրական խաղով լարուել են իրար դէմ։*

X

---

## ԳԱՒԱՌ

*ԱԽԱԼՑԽԱ, 7 դեկտ.—Կիրակի, նոյեմբերի 27-ին, Քաղ. Վարչութեան դահլիճում տեղի ունեցաւ Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի անդամների ընդհ. ժողովը, ճիւղի 1917 թուի նախահաշիւը քննել-հաստատելու համար։*

*Ըստ Վարչութեան նախահաշուի եկամուտ է սպասւում 31,680 ռ. և նոյնքան էլ ելք։ Գլխաւոր ծախսեր լինելու են որբանոցի, տեղական կարօտեալների, գրադարանի, ուսումնատուների, արհեստանոցի և այլն հիմնարկութիւնների վրայ։ Ժողովը անփոփոխ հաստատեց։*

*—Ախալցխայի որբանոցի համար արդէն վարձել են քաղաքիս Յարոյեանների բնակարանը 700 ռուբլու, սակայն վերևի յարկում զինուորականի մինչև այսօր չը դատարկելու պատճառով, հնար չեղաւ որբանոցը ամբողջովին տեղաւորել, ուստի մեծամասնութիւնը դեռ մնում է յաջորդարանի շինութեան մէջ։ Եւ որովհետև որբանոցի վարչութեանը թոյլատրուած է մնալ յաջորդարանում մինչև առաջիկայ յունուարի մէկը, ուստի Կ. Հ. Բ. Ընկ. Վարչութիւնը նորից խնդրամատոյց է եղել Նորին Վեհափառութեան՝ թոյլատրելու որբանոցին կրկին որոշ ժամանով մնալու յաջորդարանում, մինչև վարձուած բնակարանի դատարկումը։*

*—Ախալցխայի որբերի մէջ աշնան վերջերին կրկին երևան եկան մորթու բոր հիւանդութիւնը, որը ամառը բաւական առողջացել էին, ուստի Վարչութիւնը դիմել է Կենտր. Կոմիտէտին (Թիֆլիս), Ախալցխայում մասնաւոր հիւանդանոց բանալու, այդ հիւանդութեան առաջն առնելու համար։ Ներկայումս որբերի 50 $^0/_0$-ը համարեա վարակուած են այդ հիւանդութիւնով, որոնք առանձնացնելով բժշկւում են։*

*—Այս տարի զարմանալի եղանակներ է լինում մեզանում։ Զրնայելով որ դեկտեմբեր ամսումն ենք, սակայն ձիւնի փոխարէն անձրև է տեղում։ Եղանակների այս տարօրինակութիւնից մեզանում վարակիչ հիւանդութիւնները չեն վերջանում. մինչև այսօր էլ երեխաների մէջ խիստ կերպով շարունակւում է քութէշ (սկարլատինա) և բկացաւ (դիֆտերիտ) հիւանդութիւնները, տանելով զգալի քանակութեամբ զոհեր։ Նորերս 3 օրուայ մէջ այդ հիւանդութիւնից մեռան պ. Յակոբ Քէչիչեանի երկու զաւակները։ Այդ վաղամեռիկ երկու փոքրիկների յիշատակին պ. Քէչիչեանը նուիրեց որբանոցին 100 ռ.։ Պ. Ար. Վիրաբեանը՝ իր փոքրիկ զաւակի՝ Ստեփանիկի, վերոյիշեալ հիւանդութեամբ մահանալով, նրա յիշատակին նուիրեց նոյն որբանոցին 100 ռ.։*

*Թ.*

*ՕՐԴԱԿԼՈՒ (Դարաչիչակ-Ծաղկաձորի վիճակ), 5 դեկտեմբերի.—Ներկայ համաշխարհային պատերազմը այնպիսի մի մթագնած մթնոլորդ է ստեղծել գաւառի հայութեան հորիզոնում, որ խեղճ գիւղացին անել դրութեան մէջ սպասում է իր ճակատագրին։*

*Այսօր թիւրքահայութեան սև բաղդը սպառնում է Կովկասահայութեան. այնտեղ մատնուեցին սրի, այստեղ մատնւում են սովի։*

*Գաւառի հայութեան գիւղեր, օջախներ մարում են մէկը միւսի ետևից, չկան օգնութեան ձեռքեր։ Ամիսներով օճառի և շաքարի երես չենք տեսնում, ալիւրի պուդը ծախւում է 8 ռ. 50 կ., աղինը 2 ռ. 20 կ., լուցկու տուփը 8 կ., իւղի 1 գրուանքան 2 ռ. 50 կ., ձուն հատը 5 կ., իսկ մինչև գարունը վրայ հասնի, տնտեսապէս քայքայուած ժողովուրդը կոչնչանայ։ Այս բոլորի վրայ աւելանում է եղջիւրաւոր անասունների հիւանդութիւնը, որ մի ամիս է տարածուել է շրջանումս և անհագին զոհեր է տանում. օրին. Օրդակլու գիւղում մի ամսուայ ընթացքում սատկել են 50 հատ եզ և 500 ոչխար։*

*Այժմուանից պէտք է առաջը առնել ապագայի մեծ զոհերին, պէտք է կազմել սպառողական խանութներ, միջոցներ ձեռք առնել, որ պետութիւնը մայ շրջանիս համար աժան գնով մթերքներ, ինչպէս բաց է թողնում մալականներին և ռուսներին։*

*Վահան Աբրահամեան*

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Վեհափառ Կաթողիկոսի Դիւանը Նորին Օծութեան հրամանով, Նոր Տարուայ շնորհաւորութեան առթիւ, ուղարկել է Խորհրդին տասն օրինակ ս. Էջմիածնի 1917 թ. փառակազմ օրացոյց։*

*Խորհուրդը յայտնում է իւր շնորհակալութիւնը։*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Դարչոյ Աղայեան Յարութիւնեանի կնոջ՝ Աննայի անուանակոչութեան օրը՝ Նիկոլայ Մարգարովի ձեռքով ժողոված յօգուտ «մի հայ մի ոսկի» ֆոնդի 170 ռ.։*

***

*Պետ. Դումայի անդամ Մ. Ի. Պապաջանեանը Դիլիջանի որբանոցները այցելելիս յօգուտ նոյն որբանոցների կարուձևի և ձեռագործի արհեստանոցի նուիրեց 25 ռ.։*

***

*Պ. Մ. Քալանթարեանը յայտնում է, որ ի նպաստ հանգուցեալ Կարապետ եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնելու ստացել է շնորհակալութեամբ Ստ. Կանայեանցի միջոցով նկարիչ Եղիշէ Թադէոսեանից 30 ռ., բժշկպ. Ա. Զարգարեանից 5 ռ. և երկու ոմնից 2 ռ., այլև Սահակ քհյ. Սահակեանի միջոցով Սարգիս Աւետիսեանից 25 ռ., Սահակ քհյ. Սահակեանից 10 ռ.։*

***

*Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է տօների առթիւ յօգուտ չքաւորների հետևեալ նուէրները՝*

*1) Վիտոցկի և Ընկ. Առևտր. տան գրասենեակից 5 ֆունտ թէյ.*

*2) Պ. Գ. Մ. Զիլինգարեանից՝ 120 թաշկինակ, 120 տղամարդկանց բուճ* (НОСКИ) *և 110 մատիտ։*

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝

—Թեմիր Խան Շուրայից պ. Լիւդմիլա Վլ. Կամարովսկուց 6 ռ.։

—Թիֆլ. Փոխադարձ Վարկի Ընկ. ծառայողներից 14 ռ.։

---

## ՃԻՒՂԵՐ

Դուշէթի ճիւղի վարչութիւնը դպրոցին կից բացում է գրադարան-ընթերցարան։ Խորհրդի կողմից յատկացրած է «Անահիտեան» գրադարաններից մէկը։

***

Թեմիր-Խան-Շուրայի Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղը, շնորհիւ Վ. Առաքելեանի, սոյն դեկտեմբերի 12-ից արդէն վերաբացուել է և սկսել է իւր ջեռանդուն գործունէութիւնը։ Ճիւղի անդամները կազմուած են գլխաւորապէս տեղւոյն յարգելի տիկիններից։

***

Արդահանի և Տանձոտի մի խումբ անձինք կազմելով պատշաճ արձանագրութիւն, դիմել են Խորհրդին թոյլ տալ բանալու Արդահանում Կ. Հ. Բ. Ընկ. նոր ճիւղ։ Խորհուրդը յարգելով նոցա խնդիրը արել է կարևոր կարգադրութիւնը։

***

Ս. Խաչ քաղաքից ուսուցիչ Աշոտ Հախումեանը դիմելով Խորհրդին ցանկութիւն է յայտնել Ս. Խաչ. քաղաքում Բար. Ընկ. նոր ճիւղ բանալ, և խնդրել է ուղարկել իրեն Ընկ. կանոնադրութիւնից և տալ հրահանգներ ճիւղ բանալու։

---

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Հինգշաբթի, 22-ին դեկտեմբերի, կայացաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։

Նախագահը զեկուց հետևեալ խնդիրները.

1. Մեսրոպ քահանայ Մելեանը, որը Տրապիզոնում ներկայացուցիչ է հոգևոր կառավարութեան և լիազօր Հ. Կ. Կոմիտէի, ուղարկել է մի ընդարձակ զեկուցում, որի մէջ հաղորդում է, որ Տրապիզոնի գլխաւոր զինուորական իշխանաւոր գեներալ Շվարցը գտել է Ղալամքարինի բողոքը Տրապիզոնի Հայկական Կոմիտէի դէմ անարդար և վճռել է՝ ենթարկել նրան դատի, իսկ Հայր Մելեանցին իրաւունք է տուել հրաւիրել գործի Հայկական Կոմիտէին և յանձնել նրան բոլոր հայկական գոյքերը, կալուածքները, դրամը և գործերը։

Կոմիտէն դեկտեմբերի 1-ից անցել է գործի հետևեալ կազմով. 1. Նախագահ պ. Արշակ Առաքելեան, իրաւաբան, լիազօր Կ. Հ. Բ. Ընկերութեան, անդամներ՝ Մ. Էմերեան, Ս. Մանկրասեանց, Վ. Բալայեանց և Ա. Սինանեանց։

Հայր Մելեանը հաղորդում է, որ Տրապիզոնում բացուել է և Կովկասի Հ. Բ. Ընկերութեան ճիւղ իւր նախաձեռնութեամբ։ Կենտրոնական Կոմիտէն որոշեց. ա) առաջարկել Տրապիզոնի Կոմիտէին ուղարկել իրեն, կալուածքների ցուցակը, դրամական հաշիւ և տեղեկութիւն տալ կալուածքների մուտքի մասին. բ) առաջարկել բանալ Տրապիզոնում որբանոց, դպրոց և ապաստարան եկող գաղթականների համար։

2. Կենտրոնական Կոմիտէի Օլթի շրջանի լիազօր պ. Վ. Մադմանեանը ներկայացրել է զեկուցում պատերազմից փասուած հայերի ծանր վիճակի մասին և հաղորդում է, որ ժողովել է 200 որբ։

Կենտրոնական Կոմիտէն որոշեց՝ բանալ Արդանուշում որբանոց և հոգատարութիւնը յանձնել պ. Մադմանեանին և տեղական նոբարաց Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղին։

3. Նիստին ներկայ էին Տաճկական Բասենի հայ գաղթական ժողովուրդի նորեկ պատգամաւորները՝ պ. Տէր-Սամուէլեան, Ս. Մկրտչեան և Ս. Զբվարեանց։ Պատգամաւորները ներկայացրին նրանց տուած ժողովուրդի կողմից համախոսականը և մի զեկուցագիր Բասենի շրջանի 65 հայաբնակ գաղթականների անելանելի դրութեան մասին։ Նախագահը յայտնեց, որ այդ հարցի մասին ստացուել է տեղեկագիր նոյն շրջանի Քաղաքների Միութեան ներկայացուցիչ պ. Ս. Օհանջանեանից.

Թէ պատգամաւորների մանրամասը բանաւոր և թէ յիշեալ գրաւոր զեկուցումներից նկատուեց, որ Բասենի գաղթականութիւնը, մօտ 12000 հոգի, մատնուած է մոռացութեան կազմակերպութիւնների կողմից, չափաւոր օգնութիւն հասցնում է Քաղաքների Միութիւնը իւր սակաւաթիւ սննդատու կայարաններով և Կ. Հ. Բ. Ընկերութիւնը իւր միակ պահեստով, որը Բաշքէյ գիւղումն է։ (Այդ զեկուցումները լոյս կը տեսնեն «Համբաւաբերում):

Կենտրոնական Կոմիտէն որոշեց. ա) ժողովել որբեր, որոնց թիւը հասնում է 500 հոգու և բացանել դպրոցներ Ջալալ-Օղլի, Ախալցխա և Ծարսկի-Կոլոդցի. բ) բացանել դպրոցներ մնացեալ երեխաների համար, եթէ գտնուին ուսուցիչներ. գ) դիմել գաղթականների գլխաւոր լիազօր գեն. Թամամշեանին, որ կառավարութիւնից նպաստ ստացողների ցուցակին կցել տայ ևս 7,000 հոգի, որոնք անընդունակ են աշխատանքի և խնդրել, որ մերկ գաղթականների համար թոյլ տայ Կոմիտէին ուղարկել շորեր, որը գնել է Կոմիտէն կառավարութեան հաշուով. դ) նշանակել մի ձեռնհաս լիազօր Բասենի շրջանի համար հոգալու նրանց և պաշտպանելու հարստահարութիւններից։

4. Էրզրումի մասին Կենտրոնական Կոմիտէն ի պատասխան իւր լիազօր պ. Ս. Տէր-Յակովբեանի, վճռեց փոխադրել նրան 2000 ռ., որ որբանոցը յարմարացնի 200 հոգու համար և բաց անի դպրոց թէ որբանոցի և թէ մնացեալ երեխաների համար։

5. Համաձայն պ. Ռ. Զօրեանի առաջարկութեան, Կոմիտէն որոշեց հեռագրով փոխադրել 1100 ռ. Հաշտարխան Մեսրոպ Եպիսկոպոսին, որ հասցնի Սիբիրի (Հաշտարխանի թեմ) զինուոր հայ գերիներին բաժանելու տօների առթիւ։

6. Որոշուեց առաջարկել բոլոր որբանոցների վարչութիւններին, որ տօների առթիւ հանդէսներ կազմեն որբերի համար, հրաւիրելով տեղական հայ հասարակութեան աջակցելու նիւթապէս։

7. Որոշուեց ուղարկել գաւառական գաղթականական դպրոցների աշակերտների համար 30,000 ռ. ճոթեղէն՝ շորեր կարելու աշակերտների համար։

8. Նիստի վերջում բժշկապետ Մ. Մուրադեանը զեկուց, որ Թիֆլիսի մի խումբ բժիշկներ միտք են յղացել կազմակերպելու բժշկական սեկցիա Կ. Հ. Բ. Ընկերութեան ու Կենտրոնական Կոմիտէին կից, որը նպատակ պէտք է ունենայ ուսումնասիրելու հայ ժողովրդի առողջապահական դրութիւնը և օգնութիւն հասցնի։ Այս միտքը համակրանքով ընդունուեց և որոշուեց, որ բժշկական խումբը մշակի իր ծրագիրը և գրաւոր ներկայացնի Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդին։

Նիստը փակուեց 12 ժ. գիշերուայ։

***

Պատերազմից փասուածներին օգնող Կովկասի գլխաւոր կոմիտէն ամսիս 18-ին, վերջին նիստում, որոշել է տալ Հ. Կենտրոնական Կոմիտէին, համաձայն վերջինիս նախագահ պ. Ս. Յարութիւնեանի զեկուցման, 30,000 ռ. գաղթական դպրոցների աշակերտների հագուստի համար։

***

Հ. Կ. Կոմիտէի նպաստաբաշխ մասնաժողովի միջոցաւ տրուած է 1916 դեկտ. 11—17-ը 61 կոյր, հիւանդ, անկեալ գաղթականների 110 ռ. 64 կ. նպաստ։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Իգդիր—Ազարեանից.*

*Բայազէդ ուղարկեցի 500 փութ ալիւր։ Ալաշկերտի բեռնակիրը փաղը այստեղ կը լինի։ Վան պիտ ուղարկեմ շաքարաւազ և 32 հակ հագուստեղէն։*

—

*Եկատերինոդար—Մելքոնեանից.*

*Գնուած է նորից 18 վագոն ալիւր։ Առաջարկում են 100 վագոն 3 ռ. 20 կոպ.։*

—

*Եկատերինոդար—Մելքոնեանից.*

Ռազվիլնի *կայարանից Թիֆլիս ուղարկեցի 11 վագոն Թեփ-ալիւր։*

—

*Բագու—Հ. Տէր-Միքայէլեանից.*

*Սպասում եմ ձեր կարգադրութեան բրինձ գնելու։ Այս հեռագրին պատասխանուած է՝ «խնդրում ենք գնել 5—7 վագոն»։*

---

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

*Դեկտեմբերի 16-ից—22-ը*

Ալիւր՝ *ուղարկուած է Սարիղամիշ 1 վագոն, Իգդիր՝ 4, Ղամարլու՝ 1, Գանձակ՝ 3, Վաղարշապատ՝ 2, Ներքին-Ախտա՝ 1, Դիլիջան՝ 2, Նոր-Բայազէդ՝ 2, Ղարանլուղ՝ 1, Անենսօ՝ 1, Ելենովկա՝ 1 վագոն և 500 փութ և Քարվանսարա՝ 2 վագոն և 500 փութ, ընդամենը 24 վագոն։*

*Հիւսիսային Կովկաս է ուղարկուած Ընկերութեան կողմից պ. Ալ. Շարաֆեանը ալիւրի, ցորենի և եգիպտացորենի խոշոր գնումներ կատարելու։ Ուղարկուած են նաև պարենաւորման գործի լիազօրներ պ. պ. Մ. Սահակեան և Գ. Մարտիրոսեանց՝ քննելու և վերստուգելու պահեստների գործունէութիւնը։*

---

## Ք Ր Ո Ն Ի Կ Ո Ն

*Դեկտեմբերի 19-ին Պետրոգրադի Պետրովսկի կամրջի մօտ գտնուել է Գրիգորի Ռասպուտինի դիակը։*

—

*Գեղարուեստը խրախուսող Կովկասեան Ընկերութիւնը այս ամսի վերջին կազմակերպում է հերթական գեղարուեստական ցուցահանդէս, որը տևելու է մի շաբաթ։*

—

*Պարզուել է, որ ելէքտրաքարշի գները աւելացնելով պակասել է երթևեկողների թիւը և մի օրուայ եկամուտը աւելացել է 30%-ով։*

—

*Թիֆլիզեցիների ծնողական ժողովները որոշել են դիմել Ծնողական ժողովների կենտրոնական Խորհրդին, որ սա պաշտպան միջնորդութիւն անի, որպէսզի ելէքտրաքարշի սակագինը (տարիֆը) իջեցուի աշակերտութեան համար։*

*Նոյն մտքով դիմելու են նաև Հաւլաբարի այն կողմն ապրող բնակչութեան մի մասը, որովհետև այդ կողմի համար տոմսակների գները համարեա թէ 3 անգամ թանգացել է։ Դրանց մէջ կան այնպիսինները, որ առաւօտ և երեկոյեան գնում են գործի և թանգացնելուց առաջ օրական վճարում էին 16 կոպ., իսկ ներկայ սակագնով վճարելու են օրական 40 կոպ.։*

—

*Քաղաքային դպրոցական յանձնաժողովի նիստում որոշուած է նոր բացուելիք քաղաքային դպրոցներից մէկը Դումայի որոշմամբ անուանել լեհ գրող Հենրիկ Սենկևիչի անունով։*

—

*Կովկասեան ուսումնարանական շրջանի հոգաբարձութեան խորհուրդը որոշել է Թիֆլիսում բաց անել արհեստաւորական չորս-դասեան միջնակարգ (տեխնիքական) դպրոց։ Այդ առթիւ խորհուրդը դիմել է քաղաքային վարչութեան և հարցրել, թէ ինչ աջակցութիւն կարող է վերջինս ցոյց տալ դպրոցի բացման համար։ Ծրագրուած է նման դպրոց հիմնել նաև Բաթումում և Եկատերինոդարում։*

—

*Դեկտեմբերի 11-ին Ս. Կարապետի դպրոցի դահլիճում, նոյն դպրոցի հոգաբարձութիւնն ու ուսուցչական խումբը տօնեց դըպրոցի աւագ ուսուցիչ Խ. Խաչատրեանի մանկավարժական գործունէութեան 10-ամեակը։ Հանդէսը կրում էր համեստ, ընտանեկան բնոյթ։*

—

*Նահանգապետը Վ. Վ. Վոլեանսկուն թոյլատրել է Թիֆլիսում հրատարակելու* «Кавказская Заря» *անունով օրաթերթ։*

—

*Տղայոց Ե. գիմնազիայում, ծնողական միութեան միջնորդութեամբ, յունուարից մտցուելու է թաթարերէնի դասաւանդութիւն։*

—

*«Համբաւաբերի» 1916 թուականի վերջին համարն է այս № 52-ը։ Հետևեալ համարը 1917 թուականի՝ լոյս կը տեսնի յունուարի 1-ին։*

—

*Դեկտեմբերի 21-ին վրաց «Իմէդա» ընկերութիւնը բացեց հասարակական ճաշարան Թիֆլիսում, Պուշկինսկի այգու դիմաց, ռուսաց Սեմինարիայի հին տանը։ Ճաշարանը կառավարելու են մի խումբ իշխանուհիներ և առհասարակ բարձր դասակարգի տիկիններ և օրիորդներ. զուտ մուտքը յատկացուելու է ընկերութեան կրթական նպատակին։*

*Ճաշագինը երկու տեսակ կերակրից նշանակուած է 1 ռ. 50 կ., իսկ ուսանողների համար 90 կ.։*

*Այս դէպքը էլ նորից ցոյց է տալիս, որ Բարեգործական Ընկերութիւնները սկսել են դիմել նոր տեսակի աղբիւրների նիւթական միջոցներ հայթայթելու իրենց նպատակների համար. հիմնում են թէյարան, սրճարան, կինեմատոգրաֆ, ճաշարան ևն։ Եւ պէտք է խոստովանել, որ այս ուղղութիւնը գովելի է և արժանի ամենայն խրախուսանքի։*

—

*Դեկտ. 27-ին Հայ Գրողների Ընկերութիւնն ունենալու է մի արտակարգ երեկոյթ, ուր պ. Կ. Միքայէլեան կարդալու է դասախօսութիւն «Որբերի աշխարհում» նիւթի մասին։ Բանախօսութիւնը բաղկացած է երկու մասից. առաջինում դասախօսը պիտի կարդայ որբ բանաստեղծների մասին, երկրորդում՝ զանազան պատկերներ որբերի կեանքից։*

—

*Կովկասի Համառուսական Քաղաքների կոմիտէի կողմից նըշանակուել է պ. բժ. Հ. Օհանջանեանը Հայկական Կենտրոնական Կոմիտէի նիստերին մասնակցելու, վերջինիս ցանկութեամբ,*

*որովհետև երկու հաստատութիւնները, գործելով գաղթականների համար, միշտ կարիք ունեն շփման ու որոշ հարցեր միասին լուծելու։*

—

*Դեկտեմբերի 18-ին Պալատում կայացաւ Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլաեվիչի նախագահութեամբ պատերազմից վնասուածներին օգնող Կովկասի գլխաւոր Կոմ. նիստը։ Նախագահը յայտնեց, որ ա) Կոմիտէի գործունէութիւնը լայնանում է, Կոմիտէն պէտք է հիմնէ արհեստանոց, ապաստարաններ հաշմանդամ զինուորների համար. բ) ապաստարաններ և դպրոցներ սպանուած և վնասուած զինուորների երեխաների համար, և գ) բուժարաններ հիւանդ զինուորների համար. միջոցները պէտք է տայ Բարձրագոյն Խորհուրդը։ Այդ երեք բաժանմունքների համար ընտրուեցին կառավարիչներ Փոխարքայի խորհրդի երկու անդամները պ. Պ. Լեգազուբե, Ալիշևսկի և շրջանային դպրոցական հոգաբարձու պ. Րուդոլֆ. այդ երեքը կազմում են մի վարչութիւն իշխան Օրլովի նախագահութեամբ։ Առաջին երկու տեսակի հիմնարկութիւններին յատկացուելու են գերմանական գաղութները։*

—

*Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլաևնայի Կոմիտէն որոշել է գործել Կովկասում Կովկասի գլխաւոր Կոմիտէի միջոցով յունուարի 1-ից։ Գաղթականական դպրոցների համար նշանակած գումարները այսուհետև հայ կազմակերպութիւնները ստանալու են Կովկասի Կոմիտէից։*

—

*Ամսիս 22-ին, Թիֆլիսի Արտիստիկական Թատրոնում տեղական լեհական կազմակերպութիւնները կատարեցին գրականերաժշտական հանդէս կենդանի պատկերներով ի յիշատակ հանրային հռչակ ստացած լեհական գրող Հենրիխ Սենկևիչի։ Ռուսերէն մի պերճախօս ճառ արտասանեց պրոֆ. Դուբրովսկին, որը շատ գեղեցիկ տպաւորութիւն թողեց բազմաթիւ հրաւիրուած հանդիսականների վրայ. հայ կազմակերպութիւնների կողմից խօսեց պ. Շիրվանզադէն, վրաց կազմակերպութիւնների կողմից՝ պ. Մաչաւարիանի։*

—

*Ռուսաստանում արդարադատութեան մինիստր Մակարովը հրաժարուել է, նրա յաջորդ է նշանակուել Դոբրովոլսկին։ Պրոտոպոպովը նշանակւում է ներքին գործերի նախարար։*

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ԻՏԱԼԻԱՅԻ ՀԱՅ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ

*Իտալացիներին մեզ հայերիս ծանօթացնելու գործը վերջին երկու դարերում կատարել են մեր Մխիթար աբբահօր հիմնած վանքի միաբանները։ Դրանց մէջ հաղուադէպ է, երբ մարդիկ ուխտադրուժ են եղել։ Նրանց ուխտը՝ Լագունայի ջրերի դրախտային խաղաղութեան մէջ կղզիացած Ս. Ղազարի մենաստանում՝ չէ եղել միայն անապատականի «խօսք ընդ Աստուծոյ», այլ նաև փոխադարձ միջնորդի և թարգմանի դեր Եւրոպայի և մեր ճգակոտոր ու խեղճացած ազգի մտաւոր շարժման միջև։ Դեռ հարիւր տարի աւելի առաջ նրանց արդէն կատարած գործը այնքան պատկառելի է եղել, որ մեծ Նապոլէոնը, երբ կրնկակոխ անելով երկիրները, թագերը խլելով, գահերը թաւալելով հասել էր նաև Վենետիկ, երբ հրամայել էր գրաւել բոլոր վանքերի ինչքը և քըշել վանականներին պատերազմի դաշտ, յարգեց մեր հայրենակիցների միաբանութիւնը, յետ դարձրեց խնայողական սնդուկներում պահուած նրանց հարիւր հազարաւոր ֆրանկները, ասելով. «Սրանք արևմտեան քաղաքակրթութեան լուսարձակներն են դէպի արևելքի խաւարածութիւնը. սրանք մեր Եւրոպացոց իտէալների և կատարել ուզած գործի համար պատրաստուող առաքեալներ են»։ Տեղը չէ երկարօրէն թուելու և գնահատելու այն ամենը, ինչ որ մեր Մխիթարեանները արել են արևմտեան քաղաքակրթութեան հնոցի լոյսը անդրադարձնելով մեր մթնում թաղուած ու խարխափող ազգի համար. մի բան սակայն որ նրանք բաւական չըկարողացան անել, այդ այն է, որ մեզ, բարբարոսութեան գնդանը շպրտուած ու մոռացուածներիս բաւականաչափ չծանօթացրին նոյն քաղաքակիրթ աշխարհին, մասնաւորապէս իտալացիներին, մանաւանդ 19-րդ դարի վերջին կէսի սկըզբից սկսած՝ երբ իտալացիք իրենց ազգային փառաւոր՝* risorgimento*-ից՝ քաղաքական վերածնունդից յետոյ 25—30 տարի չանցած արդէն մեծ պետութիւնների կարգն անցան։ Մխիթարեան միաբանութեան հիմնադրած* collegio armeno*-ի սաներն էլ առանձին աչքի ընկնող բան չարին այդ ուղղութեամբ մինչև վերջին գարհուրանքների և աշխարհաւերի օրերը, երբ, վերջապէս, առաջ են գալիս Իտալիայում ապրող տղայք, այնտեղ, իտալացիներին ասելու յիշեցնելու համար մեր «հազարամեայ փոխադարձ սրտակցութիւնների և մեր միևնոյն իտէալին ծառայող ազգ լինելու մասին։ Մարդիկ նորից պրպտում են արխիւները, դուրս բերում՝ դեռևս Կիլիկեան հայ թագաւորութեան օրերում Իտալիայի այն ժամանակ մեծահզօր և Եւրոպայում ու մեր արևելքում միակ մեծ դեր կատարող հասարակապետութիւնների հետ կռած դաշնագիրների և փոխադարձ սրտագին յարաբերութիւնների վաւերագրեր։ Իտալացիք նորից զարթնում ու յիշում են, որ մենք առաջաւոր արևելքում միակ ժողովուրդն ենք, որ «իւրացրել ենք լատին հին քաղաքակրթութիւնը և մեր ազգային քաղաքակրթութիւնը արել»։ Հռչակաւոր ուսուցչապետներ և հեղինակաւոր հրապարակախօսներ ձայնարկում են, որ «Եւրոպայի ոչ մի ժողովուրդ չի կարող պարծենալ իւր ծագման այնպիսի հնութեամբ և պատմական աւանդութիւններով, ինչպէս հայը»։ Նորից կարդում են Տիգրանի և Գոմպէոսի ոգորումների, Տրդատի և Դիոկղէտիանոսի մտերմութիւնների մոռացուած պատմութիւնները և գալիս են այն եզրակացութեան, որ հայի և իտալացու մէջ անտակոնիզմ հակամարտութիւն ինչպէս կարելի է ասել չի եղել և ամեն անգամ երկու ազգերն իրար պատահելիս, իրար աչքի մէջ նայելիս իսկոյն ըմբռնել են, որ «Իրենք միևնոյն իտէալին ծառայելու համար ստեղծուած ժողովուրդներ են»։ Յիշում են ու յարգանքով յիշատակում Իտալիայի քսանեինը քաղաքներում բնակուած հայ գաղութների ամեն կերպով օգտակար համակենակցութիւնը, տասնեակներով դեռ կանգուն յուշարձաններ և երբեմնի փոխադարձ սիրալիր հայրենակցութիւնները... Վերջապէս, որոշւում է, որ մենք, հայերս և իտալացիք մնացել ենք իրար, ինչպէս «մրրկաւ զատուած եղբայրներ»։ Արդ, այսօր, երբ նորից ձեռք է մեկնում մեզ, նորից հզօրացած եղբայրը աղօտապէս յիշելով անցեալի սրտակցութիւնները, վերին աստիճան գնահատելի է մեր շնորհքով երիտասարդների գործունէութիւնը գեղեցիկ լուսաւոր Իտալիայում մեր բարոյական ազգակցութեան թուլացած կապերը պնդելու համար։ Դրանցից մին է Կոստան Զարեան որ եռանդով հրապարակախօսում է այնտեղ։ Մեր հայրենակիցը, ինչպէս երևում է, և բանաստեղծ է.*

գրել է դիւցազներգութիւններ, որոնցով տաղերգում է «երկրի և երկնքի շնչերը»։ *)

Ի՞նչ ասել կուզի, կեանքի մէջ անհատի ամենէն լաւ կատարած դերը այն է, որին նա ընդունակ է իսկապէս. բայց Կոստան Զարեանները չի պիտի բաւականանան միայն պօէմաներով և ոտանաւորներով երգ երգել «երկնի և երկրի վէշտերի» խորհրդանշանական պատկերներով մեր դժբաղդ գլխին պայթած փոթորկի գարհուրանքը, մեր անուն ու չափ չունեցող թշուառութիւնների պատկերները անամօթ, փոքրահոգի և անուղղելի կերպով սրիկայ ու այլանդակ մի ժողովուրդի հետ ճակատագրական մեր կենակցութիւնը, որը Աստուծոյ պատկերին նմանեցնելու համար մեր ապարդիւն ջանքերը և անձնուիրութիւնը և միամիտ հաւատքը մեզ հասցրել են այս օրուն 22մանքին . . . . . . . . հարկ է ասել ազատ Իտալիայի թուրքերը քաղաքակրթելու համար մեր արած գործերը. պատմեցէք երիտասարդ թուրք ասած vigliacco-ների այդ մեր արիւնը խմելուց յետոյ մեզ հետ համրուրուած ապիրատ յուդաների և յանուն քաղաքակրթութեան և միևնոյն հայրենիքի համար մեր անյիշաչարութեան և նրանց լարած երդումների ու գզջումների կեղծ արտասուքների և խնդրած ներողամտութիւնների մասին. ասացէք թէ ինչպէ՛ս մենք էինք, որ Համիդեան ռէժիմի հարուածներին դէմ ամբարտակած, երկսուն տարի՞դեռ մեր անձին օրինակով ցոյց տուինք մեր գերազանցութիւնները։ Յիշեցէք, փնտռեցէք, հաւաքեցէք մեր հինգ հարիւր ամեայ համբերատար հպատակութեան միջոցին ցոյց տուած մեր օրինասիրութեան, մեր անձնուիրութեան, մեծահոգութեան հազար հազար դէպքերից և ձեռներումդ բռնած այդ փաստերը, պատրաստեցէք մեզ մոռացածներին և մեզ չի ճանաչողներին ապագայի դատարանի համար։ Ասացէք այդ ազգեր կառավարելու յաւակնող երբեմնի նոբելուկներին (պառվընիւներին) հինգհարիւրամեայ խախքութիւնը, այդ մի՛շտ ուտող, ուրացող, ծոյլ ու խէնէշ մարդկանց տեսակին ստորութիւնը, ապացուցեցէք որ նրանք արժանի չեն ժողովուրդները իրենց ենթարկած պահելու, և միլիոնաւոր երեխաներ, ծերեր, կանայք և օրիորդները ըլկելով, խոշտանգելով և աննհարին անարգանքներով, սրտաճաք անելով մորթոտող զզուելի լէշակերներից պէտք է ազատել ոչ միայն հայերին, այլ ինքն իրան Եւրոպային....։

Արշակ Ֆէթվաճեան

---

### ՀԱՅԵՐԸ ՖՐԱՆՍԱՑՈՑ ԲԱՆԱԿՈՒՄ

Րիօ-ժանեյրոյում հրատարակուող «Revue Franco-Brésilienne» թերթում կարդում ենք.

«Ֆրանսիայի համար կռուող օտարազգիների թւում գտնւում են մօտ 600 հայ, որոնցից մի մասը պատկանում են Պարիզի կամ Մարսէյլի հայ գաղութին, միւս մասը եկել են աշխարհի բոլոր ծայրերից, որոնք բոլորն էլ գինուորուել են 1914 թուի օգոստոսից սկսած։ Դրանցից մէկը նորերս հայ բանաստեղծ Արշակ Զօպանեանին գրել է հետեւեալ տողերը. «Հայերը շատ գոհ են, որ իրենց առիթ է ներկայանում ցոյց տալու, որ իրենք պատրաստ են Ֆրանսիայի համար ամենայն տեսակ զոհաբերութիւնների, և ներկայումս ռազմաբեմում գտնուող կամաւորները իրենց երջանիկ են զգում, որ կարող են Ֆրանսիայի համար թափել իրենց արեան վերջին կաթիլն անգամ։ Թող բոլոր հայ կամաւորներից ոչ ոք չը վերադառնայ, միայն թէ մենք կարողանանք ամենափոքրիկ ծառայութիւնը մատուցանել մեծահոգի Ֆրանսիային»։

*) Լիկուրիական ծովի ափին գինուորական նաւահանգիստ Սպէցիա քաղաքում հրատարակուող «L Eroica» ամսաթերթը իւր 1916 թուականի 8—10 համարները մի հատորում ամփոփած, ամբողջովին նուիրել է այդ դիւցազներգութեան իտալերէն թարգմանութեան, որը կատարել է բանաստեղծ հրապարակախօս T. Alessandro-Rosso մի յառաջաբան ներածութիւնովը, որի թարգմանութիւնը ես խոստանում եմ տալ իմ ընթերցողներին յառաջիկայ համարում միասին. «L Eroica» հանդէսի խմբագրութեան գնահատման խօսքին.

---

# Գ ե ղ ա ր ո ւ ե ս տ

## ՄԱՐԳԱՐԷՆԵՐԻ ԳԻՐՔԸ

### I

### ՄԻՈՒԹԻՒՆ ԿԱՄ ՄՈՎՍԷՍԻ ԳԻՐՔԸ

(Antoni Lange)

*(Է Ս Պ Ե Ր Ա Ն Տ Ե Ր Է Ն Ի Ց)*

Եւ բոցավառ թփի մէջ այսպէս խօսեց Եհովան.
Լո՛ւր, Մովսէս, և պատգամիր որդիներուն Ադամայ.
Ես՝ Արարիչ գառների, անտառների անսահման
Ես՝ Ստեղծողն եմ միակ ի սկզբաննէ և հիմայ
Առիւծների, աստղերի, մարդկանց, երկնի ու ջրի
Եւ ամեն ինչ մի խօսքով մի աշխարհում միացրի։

Լո՛ւր, մի-միակ շղթայում օղակեցի համարձակ
Տիեզերքի հուր հոգին, որ թփի մէջ է ծաղկում,
Եւ շուշաններ սնուցում, առիւծներին տալիս ձագ
Եւ պատգամում է մարդկանց Սինայ սարի բարձունքում։
Որոտներում մռնչում, ցնցում յատակն ովկիանի...
Հոգի, մարմին միացրի արգանդի մէջ անհունի։

Տարածութիւնն է միակ, – միակ Աստուած՝ Եհովան
Տարածութեան, Աստծոյ մէջ—մի-և միակ ժամանակ.
Եւ պտտւում է մի ոյժ ովկիաններում անսահման
Ամեն թփում ու սիզում մի հիւթ եռում շարունակ։
Եւ մի արիւն է հոսում երակներում մարդկութեան
Եւ մի սիրով են վառւում մայր առիւծներ յաւիտեան։

Սողուններին, առիւծին և հաւքերին երկնքի՝
Ձիճուներից ստեղծեց գերահրաշ Եհովան.
Եւ Ադամին՝ գերագոյն որդին—տուեց նա հոգի
Բարձր կանգնած նա՝ միայն Քերովբէի էր նման, –
Որ ճանաչեց Աստուծուն՝ թփի միջին հրաբոց,
Արևներում ծիրանի, լազուր ծովում ալեկոծ։

Տարածութեան ովկիաններ—ժամանակից անհատնում,
Առիւծների մարմիններ, ներշնչումները հոգու,
Ծաղիկները պատմութեան՝ բնութեան վեհ խորանում,
Որպէս Տիրոջ գոյութեան հիւլէները անհարկու՝
Մեծ միութեան մի-միակ եթերներից վերասլաց,
Թօթափուեցին Ադամայ աչքերի մէջ շլացած։

Ունկնդրեցէք Ադամայ—դուք ծնունդներ հիասքանչ՝
Սիրեցէք դուք ծովերի, եթերների մի հոգին,
Եւ իմացէք այդ հզօր միութեան մէջ գերագանց՝
Ապրում էին Եդեմում գառն ու առիւծ սիրագին:
Այս միութիւն ստեղծէք—ահա միակ հրաման,
Այս է ասում բոցավառ Թփի միջին Եհովան։

Ովկիանոսի առիւծներ ունկնդրեցին լռելեայն։
Եւ բոցավառ Թփի մէջ այսպէս խօսեց Եհովան։

Գ. Բեալաշեան

---

## ԱՅՆՊԵՍ ՇՈ՛ՒՏ

Այնպէս շո՜ւտ, այնպէս շո՜ւտ մոռանալ
Եւ գրգւանք, և համբոյր, և գրկում.
Այնպէս լո՜ւռ, անտարբե՜ր հեռանալ,
Ինձ թողնել խաւարի պաղ գրկում։

Մոռանալ վայելքներ թրթռալի,
Մոռանալ ապրումներ հոգեզմայլ,
Շողշողուն երազներ անցեալի,
Եւ թողնել ու մեկնել անայլայլ։

Մոռանալ. քա՛ր սրտով մոռանալ
Սրբացրած խոստումներ երբեմնի.
Իմ առաջ սև շիրմի փոս բանալ,
Այնպէս չա՜ր, այնպէս լո՜ւռ ու դաղտնի...

Եալթա — Սիմ. Բաբխեան

---

# Գրականութիւն

## ԽԱՆՆ ՈՒ ՋՈՒԹՒՈՐԸ

Խանը բոլոր հպատակների նախանձի առարկան էր, ոչ թէ իրա բարձր դիրքով կամ անչափ ոսկով ու հողերով, այլ որովհետև իրա սերայի մէջ ունէր երեք այնպիսի գեղեցկուհի, որոնց նմանը ոչ Շահն ունէր իրա հարեմում, ոչ Սուլթանը։ Նրանց տեսնողի բերանը մնում էր բաց, այնքան չքնաղ էին, այնքան սքանչելի։—Բայց, ո՜վ զարմանք, այս հազուագիւտ գոհարների տէրը միշտ տխուր էր ու վշտոտ. որովհետև այդ գեղանի արարածները դարձել էին նրա համար անտանելի. մէկը անհաւատարիմ էր, երկրորդը գող, երրորդը ստախօս և ամեն ինչ։ Կանանց ձեռից գիշեր ցերեկ դաղւում էր խանն առանց մէկի իրա վիշտը յայտնելու։ Վիշտը թեթևացնելու համար անձնատուր էր եղել արբեցութեան։

Մի օր խանը ձիով իրա շքախմբի հետ դուրս էր եկել դաշտը որսի։ Հեռւում նշմարեց նա մի մարդ, որ տարօրինակ բաներ էր անում։ Դա մի աղքատ ջութւոր էր, երկու եզնով վար էր անում ու երբեմն երբեմն կոնները ցից արած պար գալիս։ Որսը մոռացած խանն ու իրա մարդիկը կանգնած երկար մտիկ էին անում։ Ջութւորը խիստ աշխուժով պարում էր, մէկ ծիրն սկսելիս, մէկ տափի մէջտեղ հասնելիս, մէկ էլ ծիրը վերջացնելիս։

«Անպատճառ սրան գիպած է, ասեց խանը զարմացած ու ձին մօտիկ քշելով հարցրեց.

—Ա՛յ ջութւոր, խելառ հօ չե՞ս, ինչ ես թռչկոտում։

Ջութւորը բանգէտ որմին էր, այցելուներին աչքէ անցկացնելուց ետ համարձակ խօսեց.

—Խան, գլուխդ ողջ լինի, ես խելառ չեմ, բայց եթէ ազատ խօսեմ, հօ չե՞ս պատժիլ։

—Չեմ պատժիլ, խօսիր, ինչ սիրտդ տալիս է։

—Աշխարհումս, խան, ամեն բան պատճառ ունի։ Սիրտն ուրախ մարդը, թէկուզ կերածը ցամաք հաց լինի, պար կըգայ, բաս հօ քեզ պէս յունքերը կիտած չի ման գալ։

Խանը թեթև ժպտաց ու հարցրեց.

—Ջութւոր, սաս, առանց թագցնելու, ինչ է քո ուրախութեան պատճառը, որ քեզ ու քեզ ծուլ ծուլ ես լինում։

—Էհ, խան, գիտեմ քո աչքն էնքան լի է, որ ինձ պէս աղքատի բաղդին նախանձող չես, դրա համար ասելու եմ էն, ինչ որ մինչև օրս ուրիշներից թագցրել եմ։ Էն սիրուն ու պարկեշտ կնիկը, խօսեց ջութւորը սիրտը վեր խմելով, որ ես ունեմ, ումն էլ որ լինի, խան, նա էլ ինձ նման մենակ տեղը պար կըգայ։ Փառք լինի Աստծուն, որ էսպէս բաղդի արժանացրեց։ Երբ կընկանս հաւատարմութիւնը, գեղեցկութիւնը, ազնւութիւնը միտս եմ բերում, հոգիս փառաւորւում է, սիրտս ցնծում, ոտն ու ձեռս իրանք իրանց խաղս են լինում։

Ջութւորի խօսքերը մեծ ներգործութիւն արին խանի վրայ, մի քանի վայրկեան այլայլւած լուռ մնաց, կարծես իրա մէջ մի վճիռ անելիս, յետոյ դարձաւ ասեց.

—Ջութւոր, Աստուած վկայ, նախանձելի բաղդ ունես, այսօր պար գալդ շատ տեղին է, ու էս ոսկին քեզ փէշքէշ։ Բայց, լսիր, եթէ եկող տարի էլ էս տափը վարելիս սիրտ ունենաս պար գալու, ես քեզ կասեմ, աֆարիմ, քաջ մարդ։

Այս ասելով խանը որսը թողեց և լաւ տրամադրւած դարձաւ պալատ և իսկոյն հրաման արեց, որ իրա երեք կանանց կառք նստացրած տանեն ջութւորի տնակը, այնտեղ տեղաւորեն, նրա կնկանը բերեն իրա սերայը։ Հրամանը ճշտութեամբ կատարուեց։ Ժողովրդից ով տեսաւ խանի սիրուն զուգւած կանանց ջութւորի տնակում իջևանած, երանի տուեց նրա բաղդին։ Իսկ ջութւորն անտեղեակ էր. երբ դաշտից միամիտ վերադարձաւ ու տեսաւ երեք գեղեցկուհիներին երեսբաց իրա տնակում նստոտած, մնաց ապշած, այս անակնկալ տեսարանից քիչ մնաց սիրտը պատռուի։ Կանայքն իսկոյն տեղներից վեր կացան, խոնարհ գլուխ տուին իբրև իրանց տիրոջ. ջութւորը շւարած մտածում էր. «էս ինչ փորձանքի մէջ է գցել խանը, ոչ առանձին բնակարաններում պահելու հնար ունեմ, ոչ սրանց մեծ ծախսերին դիմանալու. իմ գլխին պատուհաս է ուղարկել. փարթամ կեանքի սովոր կանայք են, հեշտ չէ սրանց բերանը հաւաքելը»։ Սրտում շատ դժգոհ էր խանի արարքից, բայց ընդդիմանալու ինչ հնար ունէր. անողը խանն էր, երկրի տէրը։ Հպատակւելով գլխին եկած փորձանքին սկսեց իրա գլխից ճար խնդրել. «սաս, խելօք գլուխ, ինչ անեմ, որ պատուհասի տեղ էս կնանիքը պատիւ դառնան ինձ համար»։

—Ահա թէ ինչ, պատասխանեց գլուխը. քո կնկայ բնաւորութիւնը դու մխալով քաշած ունէիր. գիտէիր թէ ինչ հոգի է բնակւում նրա մէջ։ Առանց լուրջ պատճառի խանն էս թանկագին կնանոնց իրա սերայից չէր հեռացնիլ. արի փորձիր, պատճառն իմացիր, յետոյ հեշտ է, սիրտդ պինդ պահիր»։ Ջութւորը լըսեց այս խորհրդին ու տարաւ գետի մօտ նրանց փորձի ենթարկեց...

Դրանից ետ անց էր կացել մի տարի և մեր ջութւորը դարձեալ նոյն տափը վարում էր երկու եզնով։ Խանը մի օր դաշտ դուրս եկաւ տեսնելու, թէ ինչ տրամադրութեան մէջ է ջութւորը։ Նա հաստատ համոզւած էր, որ իրա անպարկեշտ, մեծապահանջ,

*պատրաստ թէ ինձ և թէ լծկաններիս համար։ Կուշտ կերակրում են ու փափակ անկողնում պարկեցնում։ Կեանքս այժմ էնքան քաղցր ու երջանիկ է, որ պակաս տեղ չունի։*

*Ներիր, խան, որ քո ամենագեղեցիկ կնկանը ջրում խեղդեցի, սատախօսին ուղղելու հնար չկայ։ Միւս երկուսին լսեցիր թէ ինչպէս ուղղեցի։ Դու նրանց ինձ համար պատուհաս ուղարկեցիր, ես նրանց դարձրի իմ պատիւը, իմ սրտի ցօղը։ Կնիկարմատին ուղղելը կախուած է տղամարդի բնաւորութիւնից։ Խան, ես խորհուրդ կըտամ, բնաւորութեանդ մի քանի յատկութիւնը փոխես, թէ չէ վախում եմ, իմ առաջուայ անուշ կնիկն էլ քեզ դառը թուայ։*

*—Ա՜փըրիմ, քաջ մարդ, գոչեց խանը, երբ դու էդ շնորքի տէրն ես, ահա քեզ փէշքէշ քսան ոսկի։ Էգուցուանից կըթողնես չութըդ և կըդառնաս իմ նախրը, որովհետև քո խելքին իմ հպատակներն աւելի կարիք ունեն, քան թէ քո եզները։*

*Բամալեանց Ս.*

---

### ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

*Ստացանք պ. Վ. Վալադեանի «Ռազմական պատկերներ» գիրքը, էջ 108, գինը 75 կ.։*

—

*Ստացանք Ա. և Բ. Թոփչեանների խմբագրած 1917 թուի «Լոյս» գրպանի պատկերազարդ օրացոյցը, գինը 35 կ.։*

---

## ԱՅԼԵՒԱՅԼՔ

### ԲՈՒԺԱՐԱՐԱՆ (ՍԱՆԱՏՈՐԻՈՒՄ) 2,000 ՏԱՐԻ ԱՌԱՋ

*Հոյակապ պատիւը, որ վայելում էր ինչպէս Հելլադայում, այնպէս էլ հին Հռոմում, բժշկութեան աստուած Էսկուլապը, յունարէն Ասկլեպիոս, երևում է այն բազմաթիւ սրբավայրերից, որ կառուցուած են նորան ի պատիւ։*

*Նորերս փորել բացել են այդ տեսակ ամենանշանաւոր սրբավայր Ասկլեպիոն—Ասկլեպիան տաճարներից մէկը Սպորադեան Կոս կղզու մէջ, որ փոքր-Ասիոյ ծովեզերքին մօտիկ է։ Շինուածքի հնացորդները Ե. դարուայ են Ն. Ք.։ Այս ամբողջ ասկլեպիանը քանդուել էր 554 թուականին երկրաշարժից, բայց գտնուած մասերից դատելով կարելի է գուշակել այդ տաճարի արտաքինը. արձանագրութիւնները բաւական չեն ներկայացնելու պատմութիւնն այն բժշկական դպրոցի, որ այն ժամանակ ծաղկում էր Կոս կղզում, և բուժական այն մեթոդները, որ այն ժամանակ գործադրւում էին։*

*Այսպէս, օրինակ, հիւանդին յանձնարարում էին բացի սովորական բուժական միջոցներից, պարկել և ննջել, հենց տաճարում կամ մօտիկ, ըստ որում նա պէտք է ապաքինուէր քնի ժամանակ աստուածների օգնութեամբ, կամ յայտնութիւն ստանար դեղերի կամ բուժման միջոցների մասին։*

*Ասկլեպեան տաճարում պահպանում էին մի քանի օձ, որ աստուծոյ սիմվոլն էր։ Այդ օձերն ասկլեպեանում պահում էին, որպէսզի ամրապնդէին հիւանդի հաւատը բժշկուելու. ինչպէս տեսնում ենք, արդէն այն ժամանակ էլ բժիշկները իւրատեսակ ներշնչումն էին գործ դնում։*

*Երեկոյեան դէմ բժիշկները հաւաքւում էին բաց դահլիճը և մարելով բոլոր ճրագները, հանդիսով աղօթում էին աստծուն, որից յետոյ խրախուսում էին հիւանդներին՝ յոյս տալով բարի երազ տեսնելու։ Այս արարողութեան ժամանակ սրբազան օձերը սողսողում էին բովանդակ դահլիճում, և այն հիւանդը, որին սողոսկելով մօտենում էր ձեռնասուն օձը, համարում էր այդ նշան Ասկլեպիոսի բարեհաճութեան։*

*Այն հիւանդները, որոնք ապաքինւում էին, ըստ սովորութեան կախում էին տաճարում յուշատախտակներ, և այս տախտակները, որ գտնւում են պեղումների ժամանակ կայդերով, տուին հետախոյզների ձեռքը նիւթ դատելու հին բուժարանի մասին։*

---

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ԿՈՉ

*Բարձր Հայքի թեմը, բռնած Բայազիդից Ալաշկերտ մինչև Խնուս, Երզնկա, Բաբերդ, ներկայ արիւնալի հսկայ աղէտի մէջից ամենից դժբաղդ ու ամենատխուր երևոյթն է ներկայացնում։ 250 հազար հայ ժողովրդից միայն 30 հազար բեկորներն են մնացել, այն էլ մեծ մասամբ կանայք ու երեխաներ. բայց այդ բեկորներն են որ ապագայ յոյսերու և ակնկալութիւններու միակ ազդանակն են. որոնք ամեն օր շարունակ աւերակ Հայաստանի միւս վայրերից շարան շարան գալիս են մեր սահմանները, բոլորն էլ հալուած ու մաշուած երկամեայ տառապանքներու ու զրկանքներու ծանրութեան տակ, անօթի ու մերկ։ Թէպէտև նախնական օգնութիւն ցոյց է տրւում այդպիսիներին, բայց կարիքը այնքան մեծ է ու հրամայական, որ ցոյց տրուած օգնութիւնը ոչ մի կերպով չի բաւարարի այդ խեղճերու ամենատարրական պահանջներուն իսկ։ Անկասկած նրանք եղել են բարեկեցիկ ընտանիքներ իրենց գիւղի ու քաղաքի մէջ. մէկը իր սեփական բազուկի ուժին ու գութանին յենած, միւսը առևտրականի հանգամանքով, մի ուրիշը իր արհեստի շնորհիւ, կարողացել են իրանց համար ստեղծել կեանքի տանելի պայմաններ։ Իսկ այսօր, դառն ու շշմեցուցիչ է յիշել այսօրը։ Երէկուան շէն ու զուարթ գիւղացիները կորցրած ամեն ինչ, ցնցոտիների մէջ, անօթի ու նուազկոտ աչքերով դիտում են մեզ, մեզ՝ սրից ու աւերածութիւնից զերծ մնացողներիս, հայցելով անմիջական օգնութիւն, հազար ու մի զրկանքներու տակալէն, բոկոտն լեռներ ու ձորեր կտրելուց յետոյ, այստեղ մեր գրկին մէջ սրտից ու սովից չմեռնելու համար։*

*Ամբողջ հայութեան սեպուհ պարտականութիւնը պիտի լինի չթողնել, որ այդ խեղճերի բազմութիւնը յուսաբեկ ստիպուի թողնել ու հեռանալ իր հայրենի մայր երկրից։ Նրա աչքի արտասուքը և դառն վիշտը ամոքելու համար պէտք է, որ մենք օր առաջ հայ շինականին հայթայթենք մաճ, արհեստաւորին մուրճ ու ասեղ, և այդ ամենը ձեռք բերելու համար հարկաւոր է հայ հասարակութեան ու գործօն մարմինների լայն աջակցութիւնը։*

*Հայրենի աւերակներում գիշերաշրջիկ դարձած, հարազատներից և սիրելիներից իսպառ զրկուած ու հարստահարուած հայութեան մնացորդ փշրանքների անյոյս ու անլոյս ժողովրդի արտասուքի և արեան, տանջանքի ու զուլումի ովկիանում, սրով ու հրով մկրտուած, արիւնով շաղախուած, գերեզմանի վերածուած, Մայր Հայրենիքի առիւծասիրտ մնացորդների լալագին աղաղակն է, որ ձեզ ենք ուղարկում և ձեր քաղցր ուշադրութիւ-*

նը խնդրում դէպի ձեր հարազատները, որոնց աչքը յառած է հեռու հորիզոններ, ու ձեր օգնութեանն են սպասում, ով հայ ունեւոր, ով հայ ժողովուրդ։

Նորին Վեհափառութեան բարձր հովանաւորութեան ներքոյ գնուող Եղբայրական Օգնութեան Կարնոյ կոմիտէ. Նախագահ՝ Զաւէն վարդապետ. Մոսկ. Հայկ. Կոմիտէի ներկայացուցիչ՝ Տէր-Տաճատ քահանայ. Կարնոյ հովիւ՝ Տէր-Արսէն քահանայ. Բժշկապետ Զաւրիե. Քաղաք. Միութեան Սարիղամիշ-Կարնոյ լիազօր բժիշկ Մարգարեան. Ռուսում. կենտ. Կոմիտէի և Բարեգ. Ընկ. լիազօր՝ Ս. Տէր-Յակոբեան. Կարնոյ Հայկ. Կոմիտէի նախկին նախագահ՝ Գ. Թերզեան. Հիւանդանոցի կառավարիչ՝ բժ. Ա. Մելքոնեան. Իրաւաբան՝ Լ. Մդիվանեան. Իրաւաբան՝ Մալխասեան. Քաղաք. Միութեան տրանս. գլխաւոր կառավարիչ՝ Ռ. Տէր-Ղեւոնդեան. Քաղաք. Միութեան տրանս. գլխաւոր կառավարիչ՝ Մ. Ղուլեան. Պրոֆէսոր Լիւլէճեան. Արմենակ Միրոյեան։

Նպաստներն ուղարկել Эрзерумъ, Архимандриту Завену.

3-ն դեկտ. 1916 թ.
Կարին։

## ԿՈՉ ԹԻՒՐՔԱՀԱՅ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Երկու տարի կանցնի այն օրէն, երբ Թիւրքահայ ժողովրդի մէկ մասը, իբրև փախստական՝ ապաստան գտաւ Կովկասը, ուր ռուս կառավարութիւնը և ռուսահայ մարմինները ձեռնարկեցին օգնութեան հասնիլ իրեն, փախստականները տեղաւորելով, սընունդ և հագուստ հայթայթելով, որբանոցներ և դպրոցներ բանալով և այլն։ Աղէտեալ Թիւրքահայ մասսան ինքը չկարողացաւ իրեն վերաբերող այս գործերու մէջ ունենալ իր արժանաւոր մասնակցութիւնը, յաճախ կամքէ անկախ պատճառներով, իսկ գլխաւորաբար իր անկազմակերպ ըլլալուն հետևանքով։ Այդ մեկուսացումը բնական է որ պիտի ազդէր ոչ բաղձալի կերպով գաղթականական և վերաշինական գործունէութեան վրայ և ծընունդ տար զանազան թերութիւններու, որոնց վերացումին համար թէև շատ անգամներով Թիւրքահայ մտաւորականութեան կողմէ դիտողութիւններ և առաջարկներ եղան, բայց մնացին անհետևանք, որովհետև մինչև այսօր Թիւրքահայ ղեկավար մասերը չկարողացան կազմել փախստականական կենտրոնական մարմին մը, որով և ռուսահայ մարմինները հարկադրուեցան իրենց ուսերու վրայ կրել գործի ամբողջ ծանրութիւնը։ Իսկ փախստականական կեդրոններու մէջ կազմուած իրարմէ անջատ Թիւրքահայ մարմիններն ալ, կրելով զուտ տեղական բնոյթ, չկարողացան ըստեղծել ներդաշնակ և որոշ ուղեգծով գործունէութիւն մը։

Այժմ, երկու տարուայ իրադարձութիւններէ վերջ, հրամայական պահանջ է դարձած որ Թիւրքահայութիւնը իր օրինաւոր ներկայացուցչութեան միջոցով ստանձնէ փախստականներուն վերաբերող գործերու պատասխանատուութեան գլխաւոր մասը—1. Զօրեղ աջակից հանդիսանալով ռուսահայ մարմիններուն. 2. Ստեղծելով Թիւրքահայ տեղական մարմիններու միջև ներդաշնակութիւն և գործունէութեան միակերպութիւն և վերահսկողութեան ենթարկելով անոնց գործունէութիւնը. 3. Սերտ յարաբերութիւն հաստատելով ռուսահայ մարմիններու և Թիւրքահայ ժողովուրդի ու փախստ. մարմիններու միջև։

Շուտով Էջմիածնի մէջ պիտի գումարուի փախստականական գործով զբաղող բոլոր հայ կազմակերպութիւններու մի համագումար, ստեղծելու համար անոնց մէջ համագործակցութիւն և մի կեդրոնական մարմին, որու ձեռքն ամփոփուի գաղթականներու խնամատարութեան ամբողջ գործը։ Անհրաժեշտ է որ Թիւրքահայութիւնը այդ համագումարին մէջ ունենայ իր ներկայացուցիչները, որ Թարգման լինեն իր բաղձանքներուն, որոնց առանցքը պիտի կազմէ Թիւրքահայ փախստականական կեդր. մարմնի կազմութեան հարցը։ Եւ որպէսզի այդ ներկայացուցիչները կարողանան հեղինակութիւն ունենալ թէ բովանդակ փախստական Թիւրքահայութեան և թէ ռուսահայ մարմիններու առաջ, հարկաւոր է որ անոնք ներկայանան ամբողջ փախստականներու կողմէ առանց տեղի, կուսակցական կամ այլ խտրութիւններու։ Այդ տեսակէտով ցանկալի է որ թէ Կովկասը և թէ նուաճուած գաւառներու մէջ բնակող Թիւրքահայերը հատուածական ներկայացուցիչներու փոխարէն, ընտրեն միայն մէկ հաւաքական ներկայացուցչութիւն և անոր յանձնեն լիազօրութիւնը իրենց բաղձանքներու արտայայտիչն ըլլալու Էջմիածնի համագումարին մէջ, որու հաւանութիւնը ստանալէ յետոյ, ժամանակ և հնարաւորութիւն պիտի ունենանք ձեռնարկելու բուն իսկ կեդր. մարմնի ընտրութեան։

Վստահ ենք որ բոլոր փախստական և երկրաբնակ Թիւրքահայերը արձագանգ պիտի տան մեր այս կոչին և նպաստեն կազմելու Թիւրքահայ ներկայացուցչութիւնը, որ առաջին պայմանն է գաղթականական և վերաշինական գործերու լաւագոյն ընթացք ստանալուն։

1916 թ. դեկտ. 14 Արամ, Անդրանիկ,
Թիֆլիս Արտակ Դարբինեան

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

### ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿԻՑ ՀԱՅ ԿԱՆԱՆՑ ԿՈՄԻՏԷ

Հ. Կ. Կոմիտէն անցեալ տարուայ նման այս տարի էլ շարունակել է իր գործունէութիւնը, օգնութեան հասնելով վիրաւոր և հիւանդ զինուորներին և պատերազմից վնասուածներին։

1915 թ. աշնանից, Կոմիտէն իր գործունէութիւնը կենտրոնացրեց գլխաւորապէս հայ գաղթականների կարիքները լրացնելու, միաժամանակ մասնակցելով որբանոցների խնամատար հոգաբարձութեանց և գաղթականական կոմիտէին։

Պետրոգրադի հայ կանանց Կոմիտէից ստացուել է 10,600 կտոր զանազան շորեղէնի պատուէր փախստական երեխաների համար։ Կոմիտէն ընդունել է ռուս. Քաղաքների Միութիւնից ու Կովկասեան գաղթականական Կոմիտէի լիազօր Թամամշեանից տաք շորերի խոշոր պատուէրը և աւարտել այս 1916-ին։ Ստանալով 170,600 ռ. վերոյիշեալ երկու հիմնարկութիւններից, պատրաստել է մօտ 64,200 կտոր զանազան հանդերձներ։ Պատրաստուած շորերն ուղարկել են Գանձակ, Իգդիր, Էջմիածին, Երևան։ Կոմիտէն զինուորներին և հայ կամաւորներին ևս ուղարկել է տաք շորեր և ընծաներ։

Այս հաշուետարում Կանանց Կոմիտէն ստացել է զանազան աղբիւրներից 27,497 ռ. 16 կոպ. և ծախսել է 23,420 ռ.։

Մ ո ւ տ ք ունեցել է.

Մնացորդ գանձ. առ 1 յունուարի 1915 թ.—1863 ռ., Եղբ. Ադամեանների հիւանդանոցի համար պատրաստած սպիտակեղէնի համար 996 ռ. 25 կ., Նուիրատուութիւններ 3656 ռ. 98 կ., Բալախանու հայ կանանց խմբից 5119 ռ. 25 կ., Թիֆլիսից ի հաշիւ պատուիրած տաք շորերի 727 ռ. 92 կ., երկու ընտանեկան

երեկոյթներից «մի բաժակ թէյ» 4633 ռ. 49 կ., Պետրոգրադի հայ Կոմիտէից տաք չորերի համար 10,500 ռ., գումարը 27,497 ռ. 16 կ.։

Ծ ա խ ք արել է.

Պետրոգրադի պատուէրի համար ծախսուած է 10,500 ռ., գաղթականներին տաք շորերի համար 6776 ռ. 90 կ., որբանոցի համար շորեղէն ու ընծաներ 1495 ռ., կամաւորների Ջրօրհնէքի և Զատկական թաթախման համար 2037 ռ. 37 կ., զինուորների ծխախոտների և ընծաների համար 466 ռ. 15 կ., երկու երեկոյթների համար ծախս 423 ռ. 15 կ., ռոճիկ ծառայողներին 424 ռ, 75 կ., Պետրոգրադի ռուս կանանց Միութեան հիւանդանոցում մի մահճակալի վարձ 250 ռ., Կարմիր Խաչին 1000 ռ., իրերի համար ճանապարհածախս և զանազան մանր ծախսեր 420 ռ. 43 կ., գումարը 23,419 ռ. 95 կ.։

Մնում է դրամարկղումը—4077 ռ. 21 կ.։

Նախագահ Կանանց Կոմիտէի՝

Բագու Եղ. Բէկնազար Իւզբաշեան

———

## Վ Ր Ի Պ Ա Կ

«Համբաւաբերի» № 51-ում (էջ 1618) պ. Բալահայրումեանցի նուէրը ոչ թէ 1000 ռ. է, այլ 100 ռ.։

Նոյն համարում (էջ 1619) 5000 ռ. նուէրը ոչ թէ Յ. Թամամշեանից էր, այլ Յովհաննէս Մանթաշեանից։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

---





---

*լար, կէս տարուան 1, 75 ռ.։ Եւրոպայում տարեկան 15 ֆր., կէս տարուան 8 ֆր.։*

*«Վան-Տոսպ»-ին վերաբերեալ նամակները, հեռագրերը և դրամը պէտք է ուղարկել միմիայն խմբագրութեան հասցէով։ «Վան-Տոսպ» շաբաթաթերթը ունի իր յատուկ խմբագրական կազմը և որևէ առնչութիւն չունի «Աղբիւր»-ի և «Տարազ»-ի խմբագրութեան հետ։*

*«Վան-Տոսպ»-ի հասցէն՝* Тифлисъ, Головинск. пр. № 41. Редакція арм. журнала «Ванъ-Тоспъ» *կամ* Rédaction du journal armenien „Yan-Tosp"· Russie, Tiflis, Golovinski pr. № 41.

*3—1*

---

## Открыта подписка на 1917 годъ

НА ЕЖЕДНЕВНУЮ ГАЗЕТУ

# „КАЗКАЗСКОЕ СЛОВО"

(Третій годъ изданія)

Адресъ: редакціи и конторы: Тифлисъ, Барятинская, 6, Телеф. 14-96. **типографіи: Гимназическая, 1. Телеф. 5-66.**

| Подписная цѣна на газ.: | для город. подписч. | для иногороднихъ |
|---|---|---|
| на 1 годъ | 10 р.—к. | 12 р.—к. |
| на 6 мѣс. | 6 р.—к. | 7 р.—к. |
| на 3 мѣс. | 3 р. 50 к. | 4 р.—к. |
| на 1 мѣс. | 1 р. 25 к. | 2 р.—к. |

Допускается разсрочка подписной платы лишь для годовыхъ подписчиковъ, при условіи непосредственнаго обращенія въ контору газеты.

Пользующіеся разсрочкой уплачиваютъ: городскіе подписчики—при подпискѣ — 5 р., къ 1 марта—3 р. и къ 1 мая—2 р.: иногородніе—при подпискѣ—5 р., къ 1 марта — 4 р. и къ 1 мая 3 р.

Книжнымъ магазинамъ и кіоскамъ, принимающимъ подписку—5% скидки.

Плата за объявленія за строку петита: для мѣстныхъ объявленій—до текста—20 коп., послѣ текста—10 коп., для иногороднихъ объявленій — 40 коп. и 20 коп. За многократныя объявленія скидка.

За перемѣну адреса съ городского на иногородній 1 руб. и съ иногородняго на иногородній—60 коп.

*2—1*

## Открыта подписка на 1917 годъ

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

# „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литераторовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб., на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдвое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходить по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

**Иванъ Томасовичъ Амировъ**

---

## Продолжается подписка на

Первый и единственный по типу ежемѣсячный иллюстрированный журналъ

# „АРМЯНЕ и ВОЙНА"

Посвященный вопросамъ армянской жизни въ связи съ войной.

ЦѢЛЬ ЖУРНАЛА: широкое освѣдомленіе общества съ армянской дѣйствительностью.

Въ журналѣ принимаютъ участіе извѣстные русскіе и армянскіе литераторы и журналисты.

ПОДПИСНАЯ ЦѢНА:

| | | | |
|---|---|---|---|
| За годъ | 3 р. — к. | За 3 мѣсяца | 75 к. |
| „ ½ годъ | 1 р. 50 к. | Отдѣльный номеръ | 25 к. |

Подписную плату можно присылать марками.

Пробный номеръ высылается за 3 десятикопѣечныя марки.

Адресъ: конторы и редакціи Одесса, Польская ул. № 16.

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военнойценз.

